կան » ստրկանութեան միջամտութիւն – ներուն դէմ. ստրկանութիւն մը՝ որ «Կեսթափոյի միջոցներուն կը դիմէ» կը պոռային ցուցարարները :

Ցոյցերը կատարեալ ըմբոստութեան բնոյթ առացան, մէկ կողմէ բազմարուեստից վարժարանին եւ միւս կողմէ համայնավար կուսակցութեան ակումբին առ – ջեւ :

Իրիկուան դէմ, ուսանողները հաւաքուած էին բազմարուեստից վարժարանին մէջ, միթինկ մը սարքելու համար : Զինուորականները վրայ հասան եւ ցուցարարները փողոց խուժեցին : Բացագանչութիւնները սկսան՝ ստրկաններուն դէմ. — «Սրիկաներ... փախստներ...» : Այս իմաստով թռուցիկներ ալ ցրուած էին :

Զինուորականները ճարահատ կը սկըսին ճօկաններու հարուածներ տալ : Ուսանողները կը փոխադարձեն : Ոստիկաններու թիւը կ'աւելնայ : Ցուցարարները կ'ուղղուին դէպի կեդր. կոմիտէին հաւաքատեղին : Եւ արտասովոր առաջին ռումբերը կը պայթին : Բազմաթիւ ձերբակալութիւններ եղած են :

Բազմարուեստից վարժարանին տնօրէնը ուսանողներու նկատմամբ ստրկաններու գործ դրած միջոցներուն մասին խօսելով, ծանրօրէն քննադատեց զանոնք :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄՈՍԿՈՒԱՅԻ ձայնասփիւռին համաձայն՝ Խ. Միութիւնը արձակած է ար – [illegible]

ՊԷԼԿՐԱՏԻ մէջ համայնավար նախկին պարագլուխ Միլովան Ճիլասի դատավարութիւնը տեղի կ'ունենայ՝ գաղտնի : Ճիլաս կը մեղադրուի Ամերիկայի մէջ հրատարակուած իր «Նոր դասակարգը» գիրքին համար, որուն մասին խօսած ենք արդէն

ՄԱՐՈՔԻ Արդարադատական կուսակցութեան Համագումարը բացուեցաւ այսօր : Նախկին Վարչապետ Մենտէս Ֆրանս Թապաթ մեկնեցաւ, համագումարին մասնակցելու համար :

ԱՄԵՐԻԿԵԱՆ հիւլէական «Նաթիլիւս» սուզանաւը երէկ առաւօտ Հիւրի նաւահանգիստը մտաւ :

ԹՈՒՐՔԻԱ կը մերժէ, որ Միացեալ Նահանգներ մասնակցին Պաղտատի Ուխտին : Այս ուղղութեամբ Անգարայի կառավարութիւնը նոր դիմում մը պիտի կատարէ Ուաշինկթըն :

ՖՐԱՆՍԱՅԻ խումբ մը մտաւորականներ հեռագիր մը ղրկեցին Հունգարիա, Ապրիլ 22ին ձերբակալուած գրագէտ Թիպոր Տէրիի մասին մանրամասնութիւններ ստանալու համար :

ՆԻՒ ԵՈՐՔԻ մէջ սկսաւ խորհրդային [illegible]

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ Պաշտպանութեան նախարարը յայտարարեց թէ Դաշնակցային Հանրապետութեան բանակը միշտ ենթակայ կը մնայ պետութեան քաղաքական իշխանութեանց :

ԵՈՒԿՈՍԼԱՒԻՈՅ մենատէրը՝ Թիթօ, Հոկտեմբերեան յեղափոխութեան 40րդ տարեդարձին առիթով պիտի երթայ Մոսկուա, կը հաղորդէ Պելկրատի Արտաքին նախարարութեան մէկ բանբերը :

ԱՐԺԱՆԹԻՆԻ մայրաքաղաքին մէջ ձերբակալուեցան կարգ մը սէնտիքաներու պատասխանատուները : Ոստիկանութիւնը կը հսկէ քաղաքին վրայ :

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ Լիթըլ Րոք քաղաքին մէջ խաղաղութիւնը վերահաստատուեցաւ : Ոստիկանութիւնը կը հսկէ, որ նոր միջադէպեր չպատահին սեւերու եւ ճերմակներու միջեւ :

ՓԵՇԱՒԱՐԻ քաղաքապետական ատեանը 16 հոգի բանտարկութեան դատապարտեց :

ԱՄԵՐԻԿԵԱՆ թերթի մը համաձայն Մարոքի մէջ հակասեմական շարժում մը սկսած է :

ԹՈՒՐՔԻՈՅ վարչապետ Մենտերէս մարշալ Բուլղանինի նամակին պատասխանին մէջ յիշած է, թէ Սուրիա մեծ վտանգ մը կը ներկայացնէ Անգարայի կառավարութեան համար :

ԱՍԻԱԿԱՆ ԿՐԻՊԸ Ֆրանսա մտած է արդէն եւ քանի մը հոգի մահացու կերպով վարակուած է համաճարակէն :

Imprimé sur les presses du Journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Վարանէն ընկեր Խաչատուրեան Սու – րէն հազար ֆրանք կը նուիրէ Մշակոյթի Տան, հազար ֆրանք Շաւարշ Միսաքեան սրահին, հազար ֆրանք ալ «Յառաջ»ի բարգաւաճման համար :

(Ստանալ «Յառաջ»էն :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ. — Այրի Տիկին Մարիցայ Սուվալեան կը ծանուցանէ որ հան – գուցեալին յիշատակը յարգողները ներկայ ըլլան հոգեհանգիստի պաշտօն – պատարագի, որ տեղի պիտի ունենայ այս կիրակի առաւօտ, Գոմոնի (Մարսէյլ) Ս. Սահակ եկեղեցին, իր եղբօր՝ Համբար – ձում Պասմաճեանի յիշատակին :

### ՀԱՃԸՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ ՏԱՐԵԴԱՐՁԸ

ՇԱՍ. — Հաճընի Հայր. Ընդհ. Միու – թիւնը «Աբծերպինեի հերոսամարտին 37րդ տարեդարձը կը տօնէ Կիրակի (13 Հոկտեմբեր) : Լիոնէն Թագւոր քհն. Փօսթեքեան հոգեհանգստեան արարողութիւն պատարագ պիտի մատուցանէ ու Թ հա – գար նահատակներու յիշատակին եւ պի – տի քարոզէ : Նաեւ աւանդական հարիսայ նահատակներու հոգւոյն : Կը հրաւիրուին շրջանի բոլոր հայրենակիցները եւ նա – հատակներուն յիշատակը յարգողները

## ՏԱՐԵԿԱՆ
## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ի նպաստ Կապ. Խաչի օդափոխութեան կայանին :

Նախագահութեամբ Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղին

Տեղի կ'ունենայ 12 Հոկտեմբեր, շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ լոյս, Պլերէ Միլէ շքեղ սրահներուն մէջ, Փլաս Պէլ – գուռ :

Գեղարուեստական բաժին եւ հաճելի անակնկալներ :

Ընտանեկան զուարթ մթնոլորտ

Կը հրաւիրենք Լիոնահայ հասարակութիւնը անխտիր, քաջալերելու մեր այս ձեռնարկը որուն հասոյթով պիտի կարենանք Կապ. Խաչի օդափոխութեան կայանին մէջ՝ հայկական մանուկներու ոչ թէ միայն մաքուր օդ՝ այլ եւ անոնց՝ գէթ տարին մէկ անգամ հայկական մթնոլորտի մը մէջ ընտանեկան դաստիարակութիւն մը ապահովել :

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԸՐԸ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Տեղի կ'ունենայ ՀՈԿՏ. 26ին :

Մանրամասնութիւնները յաջորդով :

×

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 26ին, Շաբաթ իրիկուն, ժամը 20-30ին :

Մանրամասնութիւնները յաջորդով :

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

« Հայաստան » Թերթի փէրմանանը ամէն շաբաթ օր ժամը 3 — 6. 17. Րիւ Պիէօ :

### ՀՐԱՉ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Իր անմոռանալի ամուսնոյն՝ Հրաչ Սարգիսեանի մահուան Գ. տարելիցին առթիւ, այրի տիկին Արշալոյս Սարգիսեան 2500ական ֆրանք կը նուիրէ. —

Կապոյտ Խաչի կայանին ;

Կարմիր Խաչի կայանին ;

Եկեղեցւոյ Կրթ. ձեռնարկին եւ «Յառաջ»ին (տպարանի փոխադրութեան առթիւ) :

(Ստանալ «Յառաջ»էն) :

### ՇԱՎԻԼԻ ԵԿԵՂԵՑԻՆ

Ձեռամբ Տիկին Մ. Ակմոյեանի, Տիկին Լուսին Պօյաճեան տասը հազար ֆր. կը նուիրէ ի յիշատակ իր ծնողքին Գրիգոր եւ Զարուհի Ակմոյեանի, Շաւիլի եկեղեցին

Ստանալ «Յառաջ»էն :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՊԱՆԵԼՕ – ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէի ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 20-30ին, ընկեր Մալխասեանի բնակարանը, 21 Սանթիէ տը Րու, Պանելօ :

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ժողովը այս երկուշաբթի, կէսօրէն վերջ ժամը 3ին, Քաֆէ Ռեժան :

### Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ ԵԿԵՂԵՑԻ

Այս կիրակի առաւօտ Հայրապետական Մաղթանք տեղի պիտի ունենայ Ամենայն Հայոց Կաթողիկոս Վազգէն Ա.ի Օծման Բ. տարեդարձին առթիւ :

Արարողութեան կը նախագահէ Կաթ. Պատուիրակ՝ Սերովբէ եպիսկ. :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ

Դպրոցասէրի առտնին գործերուն համար աշխատաւորուհի մը : Դիմել ամէն օր 1, Պուլվար Տիւ Նոր : Փանթէնէն առնել 146 հանրակառքը եւ իջնել Թէնսի – Փավիյեօն :

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Արհեստաւոր կարող մը (քուփէօր) ստորոթիի համար եւ երիտասարդ աշկերտ մը քուփի համար (15 – 16 տարեկան) :

Pour Tricots-Lingerie

PARIS-CALIFORNIE

16, Rue Sainte Cécile Paris-9e





« Իմանիթէ»ն եւ «Լիպերասիոն»ը ծան – րօրէն կ'ամբաստանեն Նախագահը որ ըն– կերվարականի մը ձախողութենէն վերջ դահլիճը կը յանձնէ աջ երեսփոխանի մը որ երբեք պիտի չկարենայ մեծամասնու– թիւն առնել :

Համայնավարներու դիրքը արդէն որոշ է, անոնք արմատականները (մենտէս – ֆրանս) ոչ դէմ պիտի քուէարկեն ոչ ալ պի– տի մասնակցին դահլիճին :

Ընկերավարականները հաւանաբար թեր քուէարկեն առանց մասնակցելու կառա – վարութեան : Անջատուած արմատական – ները համակիր կ'երեւին, մինչ անորոշ է ժող. Շարժումին դիրքը :

Այս բոլորին կարծիքը առնելէ ետք է որ Անթուան Փինէ պիտի պատասխանէ նա – խագահին : Կիրակի օր պիտի պատրաստէ իր ծրագիրը — կարեւորը մանաւանդ – բար իր տնտեսական ծրագիրն է — ապա դայն պիտի ներկայացնէ կուսակցական խմբակներուն որպէսզի ճշդէ թէ ի վիճա– կի է դահլիճ կազմելու, որո՞ւ հետ, եւ ո– րոնց քուէներով :

Հաւանաբար չկարենայ վերջնական պա– տասխան մը տալ երկուշաբթի իրիկունէ առաջ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՄԻՍԱԿԱՆ ԿՐԻՓԻ հետեւանքով Փարիզի հիւանդանոցներու այցելութիւնները ժա– մանակաւորապէս արգիլուած են :

ԱՆԳԼԻՈՅ ԹԱԳՈՒՀԻՆ եւ իշխան Ֆի – լիփ Շաբաթ օր մեկնեցան դէպի Քանա – տա, ապա Միացեալ Նահանգները պիտի անցնին պաշտօնական այցելութեան :

ՇԱՀՆԱԶ իշխանուհին, Պարսկաստանի Շահին միակ զաւակը աղջի օր ամուսնա– ցաւ ճարտարագէտի մը հետ :

ՓԱՔԻՍՏԱՆԻ վարչապետը՝ Շուռավար տի հրաժարեցաւ, հանրապետական կու– սակցութեան օժանդակութենէն զրկուած ըլլալով :

ՍԱՆ – ՄԱՐԻՆՈՅԻ հանրապետութեան տապնապը լուծուեցաւ համայնավար կա– ռավարութեան հրաժարումով :

ԱՐԵՒԵԼԵԱՆ ՊԵՐԼԻՆԻ մէջ Փիքասոյի գործերուն նուիրուած ցուցահանդէս մը բացուեցաւ :

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Նոր Սերունդի գրասենեակը բաց է ա– մէն չորեքշաբթի օր, ժամը 15էն 19, 17 րիւ Պլէօ :

### ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐԲԱԽՆԱՄ ՄԱՐՄՆԻ

Տարեկան պարահանդէսը 24 Նոյեմբեր, Կիրակի ժամը 16 – 24, Կրանտ Օթէլի սը– րահներուն մէջ :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս եկեղեց. Թաղ. Խորհուրդը ի գիտութիւն յարգոյ հասարակութեան կուգայ յայտարարելու որ Հոկտեմբեր 3էն սկսեալ վերաբաց – ուած է Թաղիս Ս. Թադէոս եկեղեցւոյ մէջ, մայրենի լեզուի ուսուցման դասըն– թացքները, ամէն հինգշաբթի կէսօրէ վերջ ժամը 1.30էն մինչեւ 4 :

Ուսուցչուհի Տիկին Մանուշ Շահմիր – եան : Այս առթիւ Թաղականութիւնը կոչ կ'ուղղէ Թաղիս եւ շրջաններու բոլոր ծը– նողներուն անխտիր, որ բարեհաճին փութալ արձանագրելու իրենց զաւակնե – րը ամէն հինգշաբթի եւ կիրակի օրերը եկեղեցւոյ խորհրդարանին մէջ :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ

Դպրոցասէրի առտնին գործերուն հա – մար աշխատաւորուհի մը : Դիմել ամէն օր 1, Պուլվար Տիւ Նոր : Փանթէնէն առ– նել 146 հանրակառքը եւ իջնել Ռէնսի – Փամփլիօն :

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ԼԻՈՆԻ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Լիոնի Ազգ. Միութիւնը կը հրաւիրէ Լիոնի հայ ծնողները փութով առաջնոր– դել իրենց փոքրիկները Հայկազեան վար– ժարանը՝ Լուի Պլան եկեղեցիին, ուր դա– սաւանդութիւնները կանոնաւորաբար ար– դէն սկսած են, կարող ուսուցչուհի Օր. Ընծայ Ստեփանեանի խնամքին տակ: Դա– սաւանդութիւնները կը կատարուին ամէն հինգշաբթի ամբողջ օրը եւ շաբաթ կէս – օրէ վերջ լինէ կամ գօլէժ յաճախող հայ աշակերտներու համար : Նոյնպէս կիրակի օրեր :

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

**ՓԱՐԻԶԻ ՄԷՋ**

3 Նոյեմբեր կիրակի գիշեր, Միւթիւա– լիթէի մեծ սրահին մէջ :

**ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ**

Հոկտեմբեր 26ին, Շաբաթ երեկոյ, Ալ– համպրայի մէջ :

**ԼԻՈՆԻ ՄԷՋ**

Տեղի կ'ունենայ ՀՈԿՏ. 26ին :

**ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ**

Հոկտեմբեր 26ին, Շաբաթ իրիկուն, ժամը 20.30ին :

**ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ**

Կիրակի, Նոյեմբեր 3, ժամը 16ին : Մանրամասնութիւնները յաջորդով :

**ՎԻԷՆԻ ՄԷՋ**

Հոկտեմբեր 27ին, կիրակի կէսօրէ վերջ ժամը 15.30ին :

Գ. Նշան Ջիլինկիրեան, Գ. Արամ Ջի – լինկիրեան, Տէր եւ Տիկին Անժէլ Սրապ– եան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Թորգոմ Մութաֆեան եւ զաւակները եւ թոռները (Պոլիս), Այրի Տիկին Մութաֆեան, զա– ւակներն ու թոռները (Պոլիս), Տէր եւ Տիկին Համամճեան եւ զաւակները (Պո – լիս), Տէր եւ Տիկին Վահէ Պէշիրեան եւ զաւակը եւ թոռը, Տէր եւ Տիկ. Լէոն Պէ– շիրեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Ալիս Գայեան էրկիւռէն եւ զաւակները (Պո – լիս), Տէր եւ Տիկին Սուքեան, զաւակ – ները եւ թոռները, ինչպէս նաեւ բոլոր պարագաները սրտի խոր կսկիծով կը ծա– նուցանեն իրենց մօր, քրոջ, տալոջ, եւ ազգականին՝

**ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՓԵՓՐՈՆ ՋԻԼԻՆԿԻՐԵԱՆԻ**
(Ծնեալ Մութաֆեան, Գարբալ)

մահը, որ տեղի ունեցաւ 11 Հոկտ., ուր– բաթ, իր բնակարանին մէջ, 82 տարե – կանին :

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ 14 Հոկտեմբեր, Երկուշաբթի ժամը 14ին, Փարիզի Հայոց եկեղեցին, 15 րիւ Ժան Կուժոն, ուրկէ մարմինը պիտի փոխա – դրուի Քոլոմպի նոր գերեզմանատունը :

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել :

### Շ. ՆԱՐԴՈՒՆԻԻ ԳՈՐԾԵՐԸ

Մամուլի տակ է՝

ՍՊԻՏԱԿ ԱՌԱՒՕՏ
(Հէքեաթ եւ բանաստեղծութիւն)
Գրեց՝ Շ. Նարդունի

× Մարսիլիոյ մէջ Շ. Նարդունիի բո– լոր գործերը առնելու, ինչպէս նաեւ բաժանորդագրուելու համար ՀԱՅ – ԲՈՅ– Ժի, դիմել Զօթօ – Ռէքս, 2 ռիւ Պէռնար տիւ Պուա :

Մարսիլիոյ մէջ ՀԱՅ – ԲՈՅԺի բաժնե– գիները, ինչպէս ամէն տարի, այս տարի եւս միրայօժար պիտի գանձէ Գ. Արմենակ Շահպազեան :

× Սպասած է Ո՞ւր ես, մայր իմ դրբոցիր

# ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, 27 Հոկտեմբեր, ժամը 16էն կէս գիշեր

GEORGE V ի հեղ սրահներուն մէջ

Ջանազան աքբաքսիոններ — Մուտք 500 ֆրանք

**Deux Orchestres — Cotillons**

Կը խնդրուի ապահովել սեղանները — հեռաձայնելով միութեան գրասենեակը PRO. 77.73

ՄՕՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ

## ԵՂԱՆԱԿԻ

## ԱՌԱՋԻՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Շաբաթ, Նոյեմբեր 16, ժամը 22էն մինչեւ առաւօտ

**HOTEL SPLENDID**

### ԽՆՋՈՅՔ – ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի խնջոյք – պարահանդէսը այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը երեքին Ահարոնեան ակում – բին մէջ, մասնակցութեամբ Կեդր. Ֆը – րանսայի Նոր Սերնդական խումբերուն :

Խմբերգ, արտասանութիւն, երգ եւ հաճելի անակնկալներ :

### ՀԱՍՑԷԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ

Դաւիթեան օդակի գործատունը (Բու– թոնիէր) կը ծանուցանէ իր յարգե– լի յաճախորդներուն, որ փոխա – դրուած է

26. RUE ÉMILE ZOLA. ISSY

Կը առանձնէ լիվրէզոններ Հեռաձայնել՝

MIC 53-23

Մաքուր եւ արագ սպասարկութիւն :

### ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

Նաւով, օդանաւով, երկաթուղիով որեւէ ընկերութեամբ եւ միեւ– նոյն գիներով դէպի Ամերիկա, Ա– ւստրալիա, Քանատա եւ Արե – ւելք : Վճարումը հոս կամ ար – տասահման : Կ'ապահովենք վի – զայի գործողութիւնները ձրի, կ'ապահովենք նաեւ տեղերը ձրի : Դիմել՝

**ԺԱՆ ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆԻ**

որ ունի 35 տարուան փորձա – ռութիւն :

**AMERICAN LLOYD**

48, Rue de la République, Marseille
Tél. : CO 4722

7, Rue Auber, Paris

Imprimé sur les presses du journal HARATCH
- 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

կողմէ, ընդհակառակն, ոչ ոք կը մերժէ այն իրողութիւնը՝ որ քաղաքացիները սկսած են զինուիլ։ Գաղտօնական շրջանակներու մէջ այս ուղղութեամբ կը յայտարարեն. — «Դամասկոսի, Հալէպի եւ այլ քաղաքներու մէջ կամաւորները կը ստանան զէնքեր, մասնակցելու համար իրենց երկրին պաշտպանութեան սուրբ գործին»։

Դամասկոսի Թուրք հիւպատոսը տեսակցութիւն մը ունենալով Սուրիոյ Արտաքին Նախարարին հետ, երկարօրէն խօսած է անոր հետ՝ վստահեցնելով, թէ իր երկրին մէջ տեղի ունեցող ռազմափորձութիւնները խաղաղ նկարագիր ունին միայն, Թուրք հիւպատոսը բողոքեց միաժամանակ սուրիական մեղադրանքներուն դէմ։

Այս շրջանի լարուած կացութիւնը կը գրաւէ սուրիական բոլոր թերթերը, որոնց մէկ մասին համաձայն՝ եգիպտական եւ սուրիական զինուորական միացեալ հրամանատարութիւնը գիշեր – ցերեկ ներկայ կացութիւնը քննելով զբաղած է, միեւնոյն ատեն՝ հարկ եղած միջոցները ձեռք առնելով։ Այսուհանդերձ, երկրին մէջ կատարեալ խաղաղութիւն կը տիրէ։

Թուրք կառավարական շրջանակներուն մէջ Միացեալ Նահանգներու Արտաքին նախարար Տըլլըսի յայտարարութեանց մասին խօսելով կը յայտնեն թէ «անոնք անկեղծ բարեկամի մը խօսքերն են»։ Թուրքերը գոհ են մանաւանդ, որ Տըլըս ա՛յդ ձեւով պատասխանեց Ս. Միութեան սպառնալիքներուն։

Ցամենայն դէպս, Թուրքիոյ դէմ սկըսած խորհրդային պայքարը շատ թեթեւ արձագանգներ կը գտնէ Անգարայի մէջ եւ այդ սպառնալիքները հազիւ թէ կ'ազդեն հասարակութեան վրայ, որուն բո՛ւն զբաղումը Հոկտ. 27ի ընտրութիւնն է։

Թուրք կառավարութիւնը պատասխանեց սուրիական նամակին, որուն մէջ կը բողոքէին թէ Թրքական բանակը կը պատրաստուի յարձակում գործելու եւ բազմաթիւ առիթներով սուրիական հողամասը անցած էր՝ տարրական օրէնքները խախտելով։

Սուրիական կառավարութեան արդէն գրած այս ամբաստանութիւնը ճշմարտութեան բազմաթիւ երկիրներ կը հանէ իր դէմ։

Պաքիստանի Արտաքին Նախարար Արտոյեան մամուլի ասուլիս մը տալով յայտարարեց, թէ հաւանական է որ դիւանագիտական խզում մը ըլլայ Սուրիոյ եւ Պաքիստանի միջեւ։

Իսկ Արեւմտեան Գերմանիոյ ձայնասփիւռը յայտարարեց, թէ Ցուկոսլաւիոյ օրինակին հետեւելով Եգիպտոս, Սուրիա, Լիբանան եւ թերեւս ալ Հնդկաստան պիտի ճանչնան Փանքովի կառավարութիւնը։

Պէյրութի ձայնասփիւռը պաշտօնապէս յայտարարեց, թէ Սէուտ Թագաւոր իր մեկնումը յետաձգած է մինչեւ կիրակի գիշեր։ Այս պարագան նախատեսուած չէր։ Կարգ մը շրջանակներու համաձայն, Սէուտ Թագաւոր կ'աշխատի որ լիբանանեան եւ սուրիական քաղաքականութեան մերձեցում մը ըլլայ. միաժամանակ կը պատրաստէ երկու երկիրներու Հանրապետութեանց Նախագահներու հանդիպում մը։

Միւս կողմէ, կիսապաշտօնական շրջանակներ կը յայտնեն, թէ կիրակի օր Յորդանանի Հիւսէյն արքան Պէյրութ պիտի երթայ եւ Սէուտի մեկնումէն առաջ «երեք»ներու ժողով մը պիտի ըլլայ՝ մէկ սեղանի շուրջ խմբելով երկու թագաւորներն ու Նախագահ Շամունը։

———o———

ՓԵՇՏԱՅԻ մէջ անցեալ տարուան յեղափոխութեան տարեդարձին առիթով որ եւ է ցոյց պիտի ճզմուի, յայտարարեց Նախարար մը՝ համալսարանին մէջ իր խօսած ճառին ընթացքին, աւելցնելով թէ վարչակարգին դէմ դաւադիրները պիտի մաքրագործուին։

ԱԼՊԷՐ ՔԱՄԻՒ ֆրանսացի տաղանդաւոր գրագէտը ստացաւ այս տարուան Նոպէլեան գրական մրցանակը։

### ՆՈՒԷՐ

Գավայոնէն Տիկին Աչճեան հազար ֆր. կը նուիրէ Հայ Մշակոյթի Տան։

Ստանալ «Յառաջ»էն։

Imprimé sur les presses du Journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

3 Նոյեմբեր կիրակի գիշեր, Միւթիւալիթէի մեծ սրահին մէջ։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 26ին, Շաբաթ երեկոյ, Ալհամպրայի մէջ։

## ԼԻՈՆԻ ՄԷՋ

Տեղի կ'ունենայ ՀՈԿՏ. 26ին։
Կը բանախօսէ ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

## ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 26ին, Շաբաթ իրիկուն, ժամը 20.30ին։
Կը խօսի՝ ընկ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

## ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կիրակի, Նոյեմբեր 3, ժամը 16ին։
Կը բանախօսէ ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ
Մանրամասնութիւնները յաջորդով։

## ՎԻԷՆԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 27ին, կիրակի կէսօրէ վերջ ժամը 15.30ին։
Կը խօսի՝ ընկ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

### ԻՍԻԻ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Իսիի մէջ Յառաջը կը ծախուի սրճարանատէր Զատիկեանի մօտ։

### ՅԱՐԳԱՆՔԻ ԱՅՑ

Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ – Եօթնեղբայրեան խումբը, յարգանքի այց մը կազմակերպած է, այս կիրակի ժամը 14.30ին, Թիէի գերեզմանատունը, ողբացեալ ընկերներ՝ Ա. ՋԱՄԱԼԵԱՆԻ, Օ– ՀԱՆ ԳԱՐՕՅԻ, ԹԱԴԷՈՍԵԱՆԻ (Պապաշայ), ՏԻԿԻՆ ԲԱՐՍԵՂԵԱՆԻ, ՍԱՐԳԻՍ – ԲԷԿԵԱՆԻ եւ ՅԱԿՈԲ ՄԵՆԵՏԵԱՆԻ շիրիմներուն։

Կը հրաւիրուին ողբացեալ ընկերներուն յիշատակը յարգողները։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 5ին,
NOTRE DAME DU LIBAN
եկեղեցւոյ մէջ։
17, Rue d'Ulm, Métro Monge

Հոգեհանգստեան հանդիսաւոր պաշտօն պիտի կատարուի
ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ՆԱԶԼԵԱՆ ԱՐՔ.Ի
եւ ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ՊԵՏՐՈՍ ԱՐՔ. ՔԷՏԻ– ՃԵԱՆԻ հոգւոյն, ի յիշատակ։
Կը պատարագէ՝ ԳԵՐԱՊԱՅԾ ԱՄԱՏՈՒՆԻ

×

Ստեփանեան եղբայրներ՝ Գառնիկ եւ Վրէժ եւ Տիկին Վարդուհի Նազարէթեան կը ծանուցանեն թէ իրենց մօր այրի տիկին Ռոզաննա Ստեփանեանի մահուան քառասունքին առթիւ եւ իրենց հօր Տիգրան Ստեփանեանի յիշատակին հոգեհանգիստ պիտի կատարուի այս կիրակի առաւօտ, Մարսէյլ, Գալվէր Օտոոյի եկեղեցին մէջ։

Կը հրաւիրուին իրենց յիշատակը յարգողները։



### ԼԻՈՆ

«Խթան» շաբաթաթերթի Լարանը այսօր շաբաթ իրիկուն ժամը 21ին, Քաղաքի վերնայարկը։ Կը խօսի Տոքթ. Լեւոն Համբարձումեան։ Նիւթ՝ «Հարաւային Ֆրանսայի Հայ գաղութները»։ Կը խօսի նաեւ եթովպահայ ուսանող՝ Գ. Գօղոս– եան։





### ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Հայ Կաթ. Երիտասարդաց Ակումբը կը կազմակերպէ ընտանեկան պարահանդէս ՋԻՄՄԷՐ պարեզրատան շքեղ սրահներուն մէջ (Փլաս Շաթըլէ), այս կիրակի, ժամը 15էն 22։







## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր-Սերոբ – Մ. Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս շաբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին։

ՓԱՐԻԶ.— Տարօն – Տուրուբերանի Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին Քէյ տը Լիոն սրճարանը։ Կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Կարտանի Նիկոլ Դուման խումբը այս կիրակի ժամը 15ին։

Ներկայ կ'ըլլան Շրջ. կոմիտէի եւ Նոր Սերունդի ներկայացուցիչները։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այս շաբաթ, ժամը 21.30ին ընկ. Մանուկի բնակարանը։ Կարեւոր օրակարգ։

Ֆ. ԿԱԳ. ԽԱԶԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը չորսին, Քաֆէ Րէժան։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէին ընդհ. ժողովը այս շաբաթ, ժամը 20.30ին, Ահարոնեան ակումբը։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։









մը հա... ծըլեն իրենց գիրքը :

Ժամը 21ին՝ վերջին արարը։ Երկու խօսքով Տեքսոն կը բացատրէ, թէ ինչու ընկերվարականները վստահութիւն պիտի չտան.— «Մեզի յաճախ ըսած էք, պարոն Նախագահ, թէ դուք դարման բերող միջոցներուն համար էք։ Սակայն, հարկ էր գիտնալ՝ թէ ի՛նչ հիւանդութեան համար եւ ի՛նչ դեղով պիտի ընէք այդ դարմանումը։ Չգիտնալով՝ ներեցէք մեզի, որ ձեզի չենք կրնար վստահիլ հիւանդը» :

Ժողովրդական Շարժումին կողմէ՝ Նիքոլա նմանապէս կը յայտնէ, թէ իրենք ձեռնպահ կը մնան :

Փուժատականները թեր քուէարկելու խոստում ըրին :

Վերջապէս, քուէարկութիւնը կատարուեցաւ եւ Ազգ. Ժողովը 198ի դէմ 248 ձայնով մերժեց վստահութիւն յայտնել Փ'Լէի: Այս արդիւնքը անակնկալ մը չէր եւ Փինէ կը սպասէր արդէն։

Երբ քուէարկութիւնը վերջացաւ, Փինէ գնաց Էլիզէ՝ Հանրապետութեան Նախագահ Քոթիի հաղորդելու համար արդիւնքը. կէս գիշերը անցած էր :

Կը կարծուի, թէ յաջորդ թեկնածուն պիտի ըլլայ Ժողովրդական Շարժումի պարագլուխներէն՝ Ռոպէր Շուման :

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

3 Նոյեմբեր Կիրակի գիշեր, Միւթիւալիթէի մեծ սրահին մէջ :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 31ին, հինգշաբթի երեկոյ, Ալհամպրայի մէջ:

## ԼԻՈՆԻ ՄԷՋ

Տեղի կ'ունենայ ՀՈԿՏ. 26ին:
Կը բանախօսէ ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

## ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 26ին, Շաբաթ իրիկուն, ժամը 20.30ին:
Կը խօսի՝ ընկ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

## ԿՐԸՆՈԲԼԻ ՄԷՋ

Կիրակի, Նոյեմբեր 3, ժամը 16ին:
Կը բանախօսէ ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ
Մանրամասնութիւնները յաջորդով :

## ՎԻԷՆԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 27ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15.30ին :
Կը խօսի՝ ընկ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 5ին, NOTRE DAME DU LIBAN եկեղեցւոյ մէջ :
17, Rue d'Ulm, Métro Monge

Հոգեհանգստեան հանդիսաւոր պաշտօն պիտի կատարուի ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ՆԱԶԼԵԱՆ ԱՐՔ.ի եւ ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ՊԵՏՐՈՍ ԱՐՔ. ՔԷՑԻՃԵԱՆի հոգւոյն, ի յիշատակ :

Կը պատարագէ՝ ՍԵՐՈՎԲԷ ՎՐԴ. ԱԳԸԼԵԱՆ



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Տ. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը չորսին, Քաֆէ Բէժան: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է :





## ՆՈՒԷՐ

Գ. Խաչիկ Թօփուզեան կը նուիրէ տասը հազար ֆրանք Հայ Կարմիր Խաչի Թէսանվիլիէի օգափոխութեան կայանին, իր կնոջ՝ Տիկին Թագուհիի ապաքինման եւ իր թոռնիկին Արաքսի - Քրիսթինի ծննդեան առթիւ :

×

Այրի Տիկին Երիցուհի Լուսիա Գապաքեան երկու հազար ֆրանք կը նուիրէ Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ Եկեղեցիին իր ողբացեալ ծնողքին՝ Տէր եւ Տիկին Գրիգոր եւ Իզաբէր Թահմիսեաններու եւ եղբօր՝ Մարտիրոս Թահմիսեանի յիշատակին (Քէօթահիացի) :

Ստանալ «Յառաջ»էն :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Վարչութեան անդամները ժողովի կը հրաւիրուին 23 Հոկտեմբեր, Չորեքշաբթի ժամը 18ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ :

## ՍԻՓԱՆ ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբին փորձերը վերսկսած են եւ տեղի կ'ունենան ամէն երեքշաբթի գիշեր, ժամը 8.30էն 10ը, Ազգ. Տանը թատերասրահը, 32 բիս ռը Թրէվիզ: Նոր անդամները կ'արձանագրուին տեղւոյն վրայ, փորձերուն ընթացքին :





Imprimé sur les presses du Journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

տարուող այս անցուդարձերուն, որոնք անկէ կ'ունենան Թուրքիոյ մտահոգու- թիւնը աւելցնելու համար։ Կովկասեան ճակատը ներկայիս խորհրդային ռազմա- կան կարեւորագոյն կեդրոններէն մէկը եղած է ։

Հակառակ այս բոլորին, Թուրքերը ան- տարբերութեամբ կը դիմաւորեն մառեչալ Թոքոսովսկիի գալուստը՝ իրենց սահմա- նին մօտ, յայտարարելով, թէ Ռուսերը կրնան նաեւ Բուլղարիոյ ղրկել Կովկաս, եթէ կ'ուզեն ։ Այս հարցին առնչու- թեամբ, պոլսական թերթերը կը գրեն թէ Ռոքոսովսկին Թրքական սահմանը ղըր- կելով, Մ. Միութիւնը բացէ ի բաց ըս- պառնալիք կ'ընէ. ուրեմն՝ Թուրքիա իրա- ւունք ունի այս ուղղութեամբ բողոք ներկայացնելու ՄԱԿի մէջ։ «Ճումհու- րիէթ» թերթը կը գրէ յատկապէս. Ռոքոսովսկի 1938ին Մանչուրիա ղըր- կուած էր՝ այնտեղ ծագած խռովութիւն- ները զսպելու համար։ Բայց, Թուրքիան Մանչուրիա չէ։ Մանչուրիոյ մէջ ան ըս- տացած էր իբր զօրավարի աստիճանը, մինչ այժմ եթէ նման խաղ մը խաղայ՝ Թուրքիոյ մէջ կրնայ կորսնցնել մառեչա- լի իր պաշտօնը։

Մինչ այս մինչ այն, ընդդիմադիր չար- ժումը խռովութիւններ սկսած է հանել Թուրքիոյ մէջ։ Եչ. օր, հակակառավա- րական ցոյցեր տեղի ունեցան Անգարայի եւ Պոլսոյ մէջ. ոստիկանութիւնը գաւա- ղաններով եւ արտասուաբեր ռումբերու միջոցաւ յաջողեցաւ ցրուել ամբոխը ։ Մայրաքաղաքին մէջ, խռովութիւններ ծագեցան, Հալք կուսակցութեան կազմա- կերպած միթինկէն եաք, ուր խօսք առած էր կուսակցութեան նախագահ՝ Իսմէթ Ինէօնիւ։ Միթինկէն վերջ՝ ամբոխը հե- տեւեցաւ Ինէօնիւի կառքին, որմէ ետք հաւաքուեցաւ Խորհրդարանի նախադա- հին տան առջեւ եւ սկսաւ բացադանչու- թիւններ արձակել ։

Ոստիկան - զօրաց ուժերը բազմապատ- կուած՝ կը հրջին ներկայիս Թուրքիոյ փո- ղոցներուն մէջ, յատկապէս՝ Անգարա եւ Պոլիս, հաւանական նոր խռովութիւննե- րու առաջքն առնելու համար։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱԹԷՆՔԻ մէջ վերջացան Յունաստանի եւ Եուկոսլաւիոյ ներկայացուցիչներուն խորհրդակցութիւնները. հրատարակուե- ցաւ ցեկոյց մը, որ կը յայտնէ թէ երկու երկիրները պիտի գործակցին իրարու հետ։ Խօսակցութեանց գլխաւոր նիւթը ե- ղած է Կիպրոսի հարցը, ինչպէս նաեւ Ն'իջին Արեւելքի թնճուկը ։

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐ սկսած են բազմա- պատկել իրենց հրթիռներուն փորձերը, որոնք մեծ յաջողութիւններ կ'արձանա- գրեն։ Միջ երկրային այլազան տեսակի հրձիգներ արձակուած են, որոնք կը բարձրանան մինչեւ 6500 քիլոմեթր՝ ան- հունին մէջ։ Աւելի զօրաւոր՝ քան խոր- հրդային հրձիգները ։

ԲՐԻՍԹԻԱՆ ՏԻՈՐԻ մարմինը այսօր Փարիզ պիտի փոխադրուի Մարսէյլ Պու- սաքի անձնական օդանաւով։ Ինչպէս գը- րած էինք մեծանուն դերձակին մահուան լուրը մեծ յուզում պատճառած է աշ- խարհի բոլոր կողմերը, մանաւանդ Տալասի մէջ (Թէքսաս) ուր Տիոր մաս- նաճիւղ մը ունէր ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաչէն Ցանձնախումբը շը- նորհակալութեամբ արձանագրած է Լիո- նի հրապարակի վրայ ծանօթ վաճառա- կան Պ. Պարպարեանի (Կաճ Քարէլ) 50 հազար ֆրանքի նուէրը ։



×

Բենիամին, Դաւիթ, Արշալոյս, Գոհար, Թերվիզ եւ Մարիամ էկէքեանները՝ Բա- բերդի Գայլու գիւղէն։ Կը կարծուի որ Ֆրանսա կը գտնուին։ Փնտռողներն են քոյր եւ եղբայր Ճուհատ եւ Աստուր էկէքեանները ։ Հասցէ՝ Նոր - Արէշ, 50 փ. թիւ 24 Երեւան, Հայաստան ։


Imprimé sur les presses du journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

### ՄԻՋՄԱՍՆԱՃԻՒՂԱՅԻՆ ԺՈՂՈՎ

Ց. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը մէջ - մասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փա- րիզի շրջանի մասնաճիւղերը, այս երկու- շաբթի ժամը չորսին, Սասունիի ճաշա- րանի վերնայարկը, 31 րիւ տ'Ալէքսան- տր, Փարիզ (2), մէթրօ Բէօմիւր Սէ- պաստօփոլ։ Կարեւոր օրակարգ ։

### ԳՈՄՐՈՆԻ ՀԱՅ ՀԱՄԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷ՛Ք ՔԱՆԻ ՄԸ ՕՐԷՆ

«Շանթ» թատերախումբը ղեկավարու- թեամբ Պր. Քէնտիրեանի կը ներկայացնէ Պր. Վահանի «ԲԱԽՏԻՆ ԱՆԻՒԸ», որ մեծ յաջողութիւն գտած է Նիսի մէջ։

Մանրամասնութիւնները յաջորդով ։

Այրի Տիկին Համասփիւռ Աղապալեան (Ամերիկա), Այրի Տիկին Եղիսաբէթ Տէր Ղուկասեան, Տէր եւ Տիկին Միհրան Կա- րապետեան, Տէր եւ Տիկին Մարտիրոս Բենիբեմէզեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Հայկ Տէր Ղուկասեան, Տէր եւ Տիկին Կանանեան, եւ զաւակները (Ամերիկա), Տէր եւ Տիկին Վազգէն Աղա- պալեան եւ զաւակները (Ամերիկա), Պ. Վիչէն Տէր Ղուկասեան եւ զաւակները, Պ. Թագւոր Թագւորեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պետրոս Արսլանկիւլեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Վահրամ Տէր Ղուկասեան եւ զաւակունք, Պ. Նուպար Տէր Ղուկասեան, Պ. Վահագն Կարապետ- եան, Օր. Անահիտ Կարապետեան, Տօքթ. Վահան Պալասանեան, Տէր եւ Տիկին Ֆի- տօն, Տէր եւ Տիկին Պարոնվարդեան եւ զաւակները (Մօպէօժ), Պ. Յարութիւն Ջարլըդճեան, բազմաթիւ պարագաները եւ բարեկամները խորունկ ցաւով կը ծա- նուցանեն մահը իրենց քրոջ, մօրաքրոջ, քենիին, մեծ մօրաքրոջ, զարմուհիին, ազգականուհիին եւ բարեկամուհիին՝

### ՏԻԿԻՆ ԳՈՀԱՐ ՎՏԱՐԱՆԴԻԻ

(Ծնեալ Եայլախանեան, Կարնեցի, 67 տարեկան, այրին բանաստեղծ Արամ Վը- տարանդիի)։

որ տեղի ունեցաւ յետ կարճատեւ հիւան- դութեան, Եչ. օր 21 Հոկտ. ժամը 1.30- ին, Պիշա հիւանդանոցը ։

Յուղարկաւորութիւնը տեղի պիտի ու- նենայ այս շաբաթ, 26 Հոկտեմբեր, կէս օրէ վերջ, ժամը 14.15ին, Հայոց եկեղե- ցին, 15 րիւ Ժան Կուժօն, Փարիզ, ուրկէ մարմինը պիտի ամփոփուի Նուազի լը Սէքի գերեզմանատունը ։

Մասնաւոր մահազդ դրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել։



# Դ Ա Շ Ն Ա Կ Ց Ո Ւ Թ Ե Ա Ն   Օ Ր Ը

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

3 Նոյեմբեր Կիրակի գիշեր, Միւթիւա- լիթէի մեծ սրահին մէջ ։

×

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Հոկտեմբեր 31ին, հինգշաբթի երեկոյ, Ալհամպրայի մէջ։

### ԿՐԸՆՈԲԼԻ ՄԷՋ

Կիրակի, Նոյեմբեր 3, ժամը 16ին։
Կը բանախօսէ ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ
Մանրամասնութիւնները յաջորդով ։

### ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Նոյեմբեր 3ին, կիրակի ժամը 15.30ին, Կղերականներու սրահը, 22 րիւ տէ Պա- հիւթիէ։
Կը նախագահէ ընկ. Պ. ՔԷՆՏԷՐԵԱՆ
Կը խօսի ընկ. Հ. ԹԱՇՃԵԱՆ
Գեղարուեստական ճոխ յայտագիր ։



## Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ ԵՒ ԳՐԻԳՈՐ-ՎԱՀԱՆԻ

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՇՐՋԱՊՏՈՅՏԸ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ

ՎԻԷՆ.— Շաբաթ գիշեր, 2 Նոյեմբեր, Կաթոլիկներու սրահը, Նախաձեռնութեամբ Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ին

ԼԻՈՆ.— Կիրակի ցերեկ, 3 Նոյեմբեր, Սթիւտիօ Քրէքի, 24 րիւ Տիւնուար

ՏԷՍԻՆ.— Կիրակի գիշեր 3 Նոյեմբեր, Հ. Յ. Դ. Տան մէջ
Նախաձեռնութեամբ Տէսինի Հայ Կրթական Մարմնոյն

Առաջին անգամ ըլլալով շրջանին մէջ, ծանօթ դերասան Ա. ԳՄԲԷԹԵԱՆ կը խաղայ մասնակցութեամբ հեղինակին եւ տեղական բեմի լաւագոյն ուժերու

## ԿԻՆՍ ԱՆՀԱՒԱՏԱՐԻՄ Է

Ծիծաղաշարժ կատակ. երեք արար ԳՐԻԳՈՐ ՎԱՀԱՆԻ

Մուտքի շատ մատչելի գիներ

Լիոնի համար տոմսերը նախապէս ապահովել, դիմելով՝
Պ. Ղ. Ղազարեանի գերձակատունը՝ 56, Rue Cuvier, Lyon - Télphone : LA 80-72

Ժողով մը, դարձեալ Կրեմլինի մէջ, որու ընթացքին որոշուած է Ժուկովի պաշտօնէ արձակումը: Նոյն օրը ընդունելութիւն մը պիտի ըլլար պարսկական դեսպանատան մէջ. բայց լուր տրուեցաւ դիւանագէտներուն որ այդ ընդունելութիւնը քիչ մը աւելի ուշ պիտի ըլլար՝ Խորհրդ. Իշխանութեանց խնդրանքով: Ընդունելութիւնը քանի մը ժամ վերջ սկսած է եւ Խրուշչեւ, Բուլգանին ու Միկոյեան այնտեղ հասած են՝ մէկ ժամ ուշ: Այս առթիւ կը յիշատակուի, թէ խորհրդային երեք ղեկավարներուն տրամադրութիւնը տեղն էր, ժպտուն էին ու երկար առեն կատակեցին արեւմտեան լրագրողներուն հետ:

Միւս կողմէ, կը նշուի թէ այս ընդունելութեան բանակին բարձրաստիճան պաշտօնատարներէն ոչ ոք ներկայ էր:

Ժուկովի պաշտօնէն արձակման լուրը հաղորդուած է, ինչպէս միշտ, Մոսկուայի թերթերուն վերջին էջին, վեր սիւնակին, վերջին պարբերութեան մէջ, հոն՝ ուր կը զետեղուին յայտարարութիւնները...

Սովորականին պէս Ժուկովի պաշտօնազրկումը զարմանք եւ յուզում պատճառած է արեւմտեան շրջանակներու մէջ, մինչ խորհրդային շրջանակներու մէջ ամէն ինչ պաղարիւնով կ՚ընդունուի:

Անգլիական Թէօյթըր գործակալութիւնը աւելի պաշտօնի բարձրացման մը կը սպասէ: Նոյն կարծիքը ունին ամերիկեան լաւատեղեակ շրջանակները որոնց համաձայն, Ժուկովի պաշտօնազրկումը նկատել իբրեւ չնորհազրկում մը սխալ պիտի ըլլար «մանաւանդ հիմա, երբ կը պատրաստեն հոկտեմբերեան յեղափոխութեան 40ամեակը որուն տօնակատարութիւնը տեղի պիտի ունենայ նոյեմբեր 7-ին, առիթ մը՝ ստեղծելու համար միասնականութեան տպաւորութիւն մը»:

Անդին համայնավար շրջանակները աւելի վերապահ են եւ տակաւին չեն կրնար խորհրդածութիւններ ընել:

Իտալիոյ Ունիթա համայնավար պաշտօնաթերթը վստահ է թէ մառէշալ Ժուկովի պիտի յանձնուի աւելի պատասխանատու պաշտօն. Նոյն կարծիքը ունի «Լիբերթէ»ն [illegible] «Աւանթի»ն [illegible] կայ մտածելու թէ եթէ Ժուկով պաշտօնանկ եղաւ պարզապէս զինքը ազատ պահելու համար էր աւելի կարեւոր պարտականութեանց համար»:

———o———

ՓԱՐԻԶԻ մէջ «Սթալինոն» անուն գեղ մը, որ կը ծախուէր դեղարաններու մէջ, աւելի քան հարիւր հոգիի մահուան պատճառ դարձած է: Զոհերուն ծնողներուն պահանջին վրայ՝ դատավարութիւն մը սկսաւ քննելու համար հարցին էութիւնը:

ԱՆԳԼԻՈՅ Պատերազմական Նախարարութիւնը կը հաղորդէ, թէ հիւլէական նոր ռազմափորձեր պիտի կատարուին Խաղաղականի մէջ:

---

Տէր եւ Տիկին Յարութիւն Թելալեան եւ զաւակները (Պուլկարիա), Տէր եւ Տիկին Յարութիւն Սրապեան, Տէր եւ Տիկին Յակոբ Քիւչիւկեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յակոբ Մալխասեան եւ զաւակները (Պուլկարիա), Տէր եւ Տիկին Կուլեմօ Ֆեսթ եւ զաւակը (Ռումանիա), Տէր եւ Տիկին Գերճ Մավեան, Տէր եւ Տիկին Գրիգոր Մերամէթճեան, ինչպէս նաեւ Ա. Քիւչիւկեան, Ա. Ալեքսանեան, Ս. Քիւչիւկեան, Լ. Մեհրամէթճեան, Ա. Էթեմէզեան, Մ. Սիմաւոնեան, Պարտիզպանեան, Մավեան, Մէքթուպճեան ընտանիքները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, քրոջ, մեծ մօր, մօրաքրոջ եւ ազգականին՝

### ՏԻԿԻՆ ԷԼԻԶ ՔԻՒՉԻՒԿԵԱՆԻ
(Ծնեալ Քէսէճեան, Անտիպանապոլսեցի)

մահը որ տեղի ունեցաւ 26 Հոկտեմբեր, 75 տարեկանին, յետ կարճատեւ հիւանդութեան: Եկեղեցական արարողութիւնը այս երեքշաբթի Հոկտ. 29ին, ժամը 12.30-ին իրենց բնակարանը 72 Ավընիւ Անաթոլ Ֆրանս, Քոլոմպ, եւ ժամը 13.30ին մարմինը պիտի ամփոփուի Քոլոմպի նոր գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ գրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

---



### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ը, առ ի գիտութիւն, կը յայտնէ հասարակութեան թէ մէկը սկսած է հանգանակութիւն ընել դաշտի գնման ու երեւակայական ժապաւէնի մը պատրաստութեան համար: Վարչութիւնս ոչ ոքի նման պարտականութիւն յանձնած է. կը խնդրուի նկատի ունենալ եւ չքաջալերել:

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Մ. Ը. Մ.Ի
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

---



### ՄԵՌԵԼՈՑԻ ԱՌԹԻՒ

Տէր եւ Տիկին Յակոբ Խաչմանեան, Մեսրոպի մահուան տարելիցին առթիւ իրենց սիրելի նշխարներու յիշատակին տասը հազար Ֆր. կը նուիրեն Շաւիլի եկեղեցիին, եւ երկու հազար Ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման տպարանի փոխադրութեան առթիւ:
(Ստանալ «Յառաջ»էն):

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր ժամը 21ին Խանէլի սրահը: Երեկոյթը նուիրուած է ԱՒԵՏԻՔ ԻՍԱՀԱԿԵԱՆԻ յիշատակին: Խօսք պիտի առնեն բազմաթիւ մտաւորականներ: Իսահակեանի բանաստեղծութիւններէն կ՚արտասանէ՝ Օր. Ժիլիէթ Աւետիսեան: Կը խնդրուի ըլլալ ճշդապահ:



### ՊՈՄՈՆԻ ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷ՛Ք ՔԱՆԻ ՄԸ ՕՐԷՆ

«Շանթ» թատերախումբը ղեկավարութեամբ Գր. Բէնտիրեանի կը ներկայացնէ Գր. Վահանի «ԲԱԽՏԻՆ ԱՆԻՒԸ», որ մեծ յաջողութիւն գտած է Նիսի մէջ:
Մանրամասնութիւնները յաջորդով:

Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Լիոնի եւ Շրջ. Ազգ. Միութիւնը եւ Եկեղեցական յանձնախումբը կը յայտարարեն թէ Լիոնի նոր եկեղեցւոյ պանծալի գմբէթը բարձրացած ու լրացած է, որուն գագաթը նուիրական խաչը պիտի զետեղուի:

Օծման հոգեւոր արարողութիւնը պիտի կատարուի Նոյեմբեր երեքին, կիրակի առաւօտ, 69 րիւ Լուի Պլան եկեղեցւոյն մէջ ձեռամբ Կաթ. Պատուիրակ Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի:

Այս առթիւ Ոսկէ կ՚ըսեն այն ուխտաւոր ազգայիններն որ կը փափաքին կնքահայր ըլլալ խաչին որ գիմէ Ազգ. Խորհրդարան:

